Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։


---





# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ 5-ՐԴ ՍԵՍԻԱՆ

Հունիսի 6-ից 7-ը Երևանում տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան, որը քննության առավ Հայկական ՍՍՌ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու, ռեսպուբլիկայում առողջապահական վիճակի և բնակչության բուժսպասարկման հետագա բարելավման միջոցառումների և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը հաստատելու մասին հարցերը։

Օրակարգի առաջին հարցի մասին զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահ Ա. Ա. Քոչինյանը։ Զեկուցողը, իսկ այնուհետև ելույթ ունեցողները կոնկրետ փաստերով ցույց տվեցին, թե ինչպես սովետական ժողովուրդը պարտիայի և կառավարության անմիջական օգնությամբ ու ղեկավարությամբ վերջին շրջանում հսկայական հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, հատ-



կապես ծանր ինդուստրիայի և գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ։ Սովետական Միությունը տնտեսության զարգացման տեսակետից արդեն գերազանցում է կապիտալիստական շատ առաջավոր երկրների և իր արդյունաբերության արտադրանքի մակարդակով գրավում է երկրորդ տեղն աշխարհում։ Մեր երկիրն անցյալ տարի ավելի շատ հաց հավաքեց, քան նախորդ տարիներին։ Զգալիորեն բարձրացել է անասնաբուծության մթերատվությունը, ինչպես նաև ընդարձակվել ու ավելացել է տեխնիկական կուլտուրաների ցանքատարածություններն ու բերքատվությունը։

Սակայն ժողովրդական տնտեսության հետագա զարգացման շահերը, նոր տեխնիկայի աճը, անհետաձգելի պահանջ են դնում լիովին վերակառուցման ենթարկել արդյունաբերության և շինարարության ղեկավարման մինչ այժմ գոյություն ունեցող ձևերը, դրանք համապատասխանեցնել նոր պահանջներին։ Ելնելով դրանից ՍՄԿԿ XX համագումարը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիան միութենական ռեսպուբլիկաներին տնտեսական գործունեության լայն իրավունք տվեցին։ Դա տեղական օրգաններին հնարավորություն է տալիս ավելի շատ սեփական



նախաձեռնություն հանդես բերելու, արտադրողական ուժերը ճիշտ տեղաբաշխելու, առանձին տնտեսական ճյուղերը խոր ուսումնասիրելու և զարգացնելու համար։ Բացի դրանից դա հնարավորություն կտա ղեկավարությունն ավելի մոտեցնել արտադրությանը, այն դարձնել ավելի կոնկրետ և օպերատիվ։

Վերակառուցման նոր ձևերի համաձայն վերանում են գերատեսչական նախկին պատնեշները և ղեկավարման բազմաճյուղությունը։ Նոր օրենքի համաձայն արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպական հիմնական ձևը պետք է հանդիսանան ժողովրդական տնտեսության խորհուրդները, որոնք կազմակերպվում են ըստ տնտեսական վարչական շրջանների։

Ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում հսկայական հաջողություններ են ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Պատմական կարճ ժամանակամիջոցում Հայաստանը հետամնաց ագրարային երկրից վեր է ածվել առաջավոր արդյունաբերություն և զարգացած կոլեկտիվ գյուղատնտեսություն ունեցող երկրի։ Ներկայումս մեր ռեսպուբլիկան ունի ավելի քան 644 արտադրական ձեռնարկություն (չհաշված

մանրերը), որոնք հագեցված են ժամանակակից, կատարելագործված տեխնիկայով, որոնք 1957 թվականին պլանով թողարկելու են 6 միլիարդ 542 միլիոն 700 հազար ռուբլու բազմատեսակ արտադրանք։ Ռեսպուբլիկայում ստեղծվել են արդյունաբերական նոր ճյուղեր։ Ներկայումս մեր երիտասարդ արդյունաբերությունը թողարկում է մետաղահատ հաստոցներ, կոմպրեսորներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, էլեկտրամոտորներ, կաբելային իրեր, էլեկտրալամպեր, հեծանիվներ, ժամացույցներ, էլեկտրաչափիչ ճշգրիտ գործիքներ և այլն։ Ծանր արդյունաբերության տեսակարար կշիռն արդյունաբերության ընդհանուր արտադրության մեջ 1956 թվականին կազմեց մոտ 60 տոկոս։

Վերջին շրջանում մեզ մոտ լայն ծավալ է ստացել էներգետիկան։ Ռեսպուբլիկայում 1955 թվականին բնակչության ամեն մի շնչին ավելի շատ էլեկտրաէներգիա է հասել, քան Ֆրանսիայում և Բելգիայում։ Ավելին. ամեն մի շնչին հասնող էլեկտրաէներգիայով մեր ռեսպուբլիկան գերազանցում է Իտալիային՝ 76 տոկոսով, Ճապոնիային՝ 80 տոկոսով և Թուրքիային՝ 21 անգամ։

Վեցերորդ հնգամյակում մեր ռեսպուբլի-



կայի արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 1,7 անգամ, գլխավորապես ի հաշիվ աշխատանքի լավ կազմակերպման, արտադրական կարողությունների լրիվ օգտագործման, աշխատատար պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, գիտության նվաճումների ներդրման։ Կառուցվելու են մի շարք նոր հիդրոէլեկտրակայաններ և արտադրական ձեռնարկություններ։ Լիովին ավարտվելու է Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը, որից հետո ձեռնարկվելու է Որոտան գետի կասկադի հիդրոէլեկտրակայանների կառուցումը, որով ռեսպուբլիկայի կայանների կարողությունը կավելանա մոտ 2 անգամ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և բնակչության կարիքները վառելանյութով բավարարելու գործում առանձնապես կարևոր նշանակություն ունի Ստավրոպոլ—Թբիլիսի—Երևան գազամուղի կառուցումը, որը նախատեսված է ավարտել 1960 թվականին։

Նախատեսվում է վեցերորդ հնգամյակում կառուցել Ագարակի պղնձի-մոլիբդենի կոմբինատը և Ախթալայի ֆլոտացիոն ֆաբրիկան։ Ընթացիկ տարում սկսվում են Ախտայի լեռնա-քիմիական կոմբինատի նախագծման աշխատանքները։ Լայն զարգացում է ստա-

նալու մեքենաշինությունը, շինանյութերի, թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերը։ Ստեղծվելու են արդյունաբերության արտադրական պրոցեսների ավտոմատացման միջոցների և գործիքաշինության նոր ձեռնարկություններ։ Դրան օժանդակելու համար Կիրովականում կազմակերպվել է գիտահետազոտական ինստիտուտ իր էքսպերիմենտալ բազայով, ինչպես նաև կոնստրուկտորական հատուկ բյուրոներ՝ Կիրովականում և Լենինականում։ Երևանում ստեղծվել է մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտ, որն այս տարի թողարկելու է էլեկտրոնային առաջին հաշվիչ մեքենան։

Ներկայումս արդյունաբերության ու շինարարության ղեկավարությունը Հայաստանում իրականացվում է 37 մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից։ Գոյություն ունեցող 644 արտադրական ձեռնարկություններից 540-ը պետական են, իսկ 104-ը՝ կոոպերատիվ։ Պետական ձեռնարկություններից 81-ը գտնվում է միութենական մինիստրությունների, 344-ը՝ միութենական և ռեսպուբլիկական մինիստրությունների ենթակայության ներքո, 52-ը՝ ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկություններ են, իսկ 63



ձեռնարկություններ գտնվում են քաղաքային ու շրջանային Սովետների տնօրինության ներքո։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ղեկավարելու համար ստեղծվել է Ժողովրդական տնտեսության մեկ խորհուրդ, իսկ շինարարության ղեկավարման համար՝ Շինարարության մինիստրություն։ Գյուղական շինարարությունը բարելավելու և այդ գործում կոլտնտեսություններին մոտիկից օգնելու նպատակով Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությանն առընթեր կազմակերպվելու է գյուղական շինարարության վարչություն։ Հայարխորհուրդն իր արտելներով պահպանվում է։ Այսպիսով, 37 մինիստրությունների և գերատեսչությունների փոխարեն ռեսպուբլիկայում կմնա միայն 16 մինիստրություն և գերատեսչություն։

Ժողտնտխորհը կազմվում է խորհրդի նախագահից, նրա տեղակալներից և Ժողտնտխորհի անդամներից։ Ժողտնտխորհին առընթեր, խորհրդակցական օրգանի իրավունքներով, ստեղծվում է տեխնիկա-տնտեսական խորհուրդ։ Ժողտնտխորհի կենտրոնական ապարատն ունենալու է մի շարք հիմնական ֆունկցիոնալ բաժիններ՝ պլանային-տնտեսական, արտադրական-տեխնիկական, աշխատանքի և աշխատավարձի, կապիտալ շի-

նարարության, կադրերի և ուսումնական հաստատությունների, ֆինանսների, կենտրոնական հաշվապահության և այլն: Ժողտնտխորհին առընթեր ստեղծվել է տասնմեկ ինքնուրույն տնտհաշվարկային վարչություններ արդյունաբերության տարբեր ճյուղերի գծով, ինչպես նաև նյութա-տեխնիկական մատակարարման, պատրաստի արտադրանքի իրացման և տրանսպորտային վարչություններ:

Բացի այս բոլորից, տեղական Սովետների տնօրինությանն են հանձնվելու արդյունաբերական 86 ձեռնարկություն, որոնք տարեկան տալիս են 450 միլիոն ռուբլու արտադրանք:

Մի շարք գիտահետազոտական հիմնարկություններ հանձնվում են Ժողտնտխորհին և Շինարարության մինիստրությանը:

Հիմնովին փոխվում է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Պետպլանի աշխատանքի բովանդակությունը և բարձրացվում է նրա դերը ռեսպուբլիկայի տնտեսական շինարարության գործում:

Ստեղծվելու է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Պետական Գիտա-տեխնիկական կոմիտե, որը կոչված է գիտության և տեխնիկայի նվաճումներն արմատավորել արտադրության մեջ:



Պարտիայի և կառավարության կողմից տեղական օրգաններին տրվող լայն իրավունքները որոշ մարդկանց մոտ կարող է առաջ բերել տնտեսական շրջանի կամ ռեսպուբլիկայի ներսում ներփակ տնտեսություն ստեղծելու տենդենցներ: Համապետական շահերին հակասող նման վնասակար տենդենցները պետք է խիստ կերպով դատապարտվեն և հակահարվածի արժանանան մեր պարտիական, սովետական ու արհմիութենական կազմակերպությունների կողմից:

Օրակարգի երկրորդ հարցում սեսիան լսեց Հայկական ՍՍՌ առողջապահության մինիստրի, դեպուտատ Ա. Ի. Խրիմլյանի զեկուցումը: Այս հարցի մասին հարակից զեկուցումով հանդես եկավ առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովի նախագահ, դեպուտատ Տ. Ս. Մնացականովը:

Օրակարգի երրորդ հարցի մասին զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար, դեպուտատ Ս. Հ. Ղևոնդյանը: Սեսիան միաձայն հաստատեց Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը և ընտրեց հատուկ դատարանների ժողովրդական ատենակալներ:

Գերագույն Սովետի սեսիան միաձայն ընդունում է «Օրենք, Հայկական ՍՍՌ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին», «Օրենք Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի (Հիմնական Օրենքի) տեքստում փոփոխություններ ու լրացումներ մտցնելու մասին», ինչպես նաև որոշում «Հայկական ՍՍՌ-ում առողջապահության վիճակի և բնակչության բժշկական սպասարկումն է՛լ ավելի բարելավելու մասին»։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, Սովետական Միության բոլոր աշխատավորների հետ միասին, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ոչ մի ջանք չեն խնայի արդյունաբերության և շինարարության կառավարման նոր ձևերը լիովին օգտագործելու, ժողովրդական տնտեսության նոր հուժկու վերելք ստեղծելու գործում։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ԵՎ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԱՑՈՒՄԸ

Դոցենտ՝ ՀՈՎՀ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որի 40-ամյակը մեծ հանդիսավորությամբ այս տարի տոնելու է սովետական ժողովուրդը և ամբողջ աշխարհի աշխատավորությունը, արմատական շրջադարձ հանդիսացավ մարդկության պատմության մեջ։ 40 տարի առաջ նա վերացրեց կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի պատմական հաղթանակն է։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան պատմության մեջ հանդիսացավ միակ ռևոլյուցիան, որի շնորհիվ մեր երկրում լուծվեց ագրարային հարցը։ Նախառևոլյուցիոն Ռուսաս-

տանում գյուղացիության 65 տոկոսը կազմում էին չքավոր գյուղացիական տնտեսությունները, 20 տոկոսը միջակ տնտեսությունները և 15 տոկոսը կուլակային տնտեսությունները։ Գյուղացիական տնտեսությունների 30 տոկոսը ձիազուրկ էին, 34 տոկոսը չունեին գյուղատնտեսական ինվենտար, իսկ 15 տոկոսը՝ չուներ իր սեփական ցանքը։ Վարելահողերի ու արոտների խոշոր մասը գտնվում էր կալվածատերերի, եկեղեցու և արքունիքի ձեռքին։ Գյուղատնտեսական արտադրությունը հիմնվում էր հետամնաց տեխնիկայի վրա։ Չկային տրակտորներ, կոմբայններ, ավտոմեքենաներ։ Աղքատությունը, սովը, քայքայումը գյուղացու մշտական ուղեկիցներն էին։

Սովետների Համառուսաստանյան երկրորդ համագումարի ընդունած հողի մասին դեկրետով իրագործվեց մեր երկրի աշխատավոր գյուղացիության դարավոր իղձերը և հանդիսացավ ամբողջ Ռուսաստանի գիտակից գյուղացիների հսկայական մեծամասնության անսասան կամքի արտահայտությունը։

Գյուղացիությունը սովետական իշխանությունից ստացավ ավելի քան 150 մի-



լիոն դեսյատին հող, որը առաջ գտնվում էր կալվածատերերի, բուրժուազիայի, ցարական տան, վանքերի և եկեղեցիների ձեռքին, գյուղացիությունն ազատվեց կալվածատերերին ամեն տարի մոտ 700 միլիոն ռուբլի (ոսկով) կապալավարձ վճարելուց։

Գյուղացիական երկրում,— գրել է Լենինը,— պրոլետարիատի դիկտատուրայից առաջինը շահեցին, ամենից շատ շահեցին, միանգամից շահեցին առհասարակ գյուղացիները։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան ցույց տվեց, որ աշխատավոր գյուղացիությունը կարող է կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումից ազատագրվել միայն բանվոր դասակարգի հետ դաշինք կնքած ու նրա ղեկավարությամբ։

Լենինը սովորեցնում էր, որ գյուղացիական մանր տնտեսության տիրապետության պայմաններում աշխատավորական մասսաները չեն կարող դուրս գալ կարիքից, որ միայն խոշոր կոլեկտիվ տնտեսությունների ստեղծումը գյուղը կփրկի աղքատությունից և կբարձրացնի գյուղատնտեսության զարգացումը, գյուղացիների համար կապահովի բարեկեցիկ կյանք։ Կոմունիստական պարտիան, հենվելով մեծ Լենինի կոոպե-

րատիվ պլանի վրա, ՍՍՌՄ-ում իրականացրեց գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացումը և այդ հիման վրա լիկվիդացրեց կուլակությունը որպես դասակարգ։

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման գործում վճռական նշանակություն ունեցավ երկրի ինդուստրացման լենինյան պլանի իրագործումը։ Սովետական պետությունը տարեցտարի հսկայական միջոցներ էր հատկացնում գյուղատնտեսության զարգացման գործին։ Միայն 1926 թվականին քաղաքից գյուղ է ուղարկվել 945.000 գութան, 88.100 հնձիչ, 54.700 կալսիչ և 94.800 քամհար մեքենա։

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսությունը միայն 1927—1929 թվականների ընթացքում արդյունաբերությունից ստացել է 926.000 ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ, այդ թվում 4.900 գութան, 970 փոցխ, 540 շարքացան, 147 սերմազտիչ։ 1929 թվականի վերջին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատում էին 250 տրակտոր և բազմաթիվ այլ մեքենաներ։

Սովետական իշխանությունը գյուղատընտեսությանն օգնեց հողի հանրային մշա



կում կազմակերպելով, կոլտնտեսություններ հիմնելով և նրանց բազմակողմանի օգնություն ցույց տալով։ Կոմունիստական պարտիայի կատարած հսկայական աշխատանքի շնորհիվ 1929 թվականին մեծ բեկում տեղի ունեցավ գյուղում։ Միջակ գյուղացին վերջնականապես համոզվելով խոշոր հանրային տնտեսության առավելությունների մեջ, շրջադարձ կատարեց դեպի կոլտնտեսությունները։ Պարտիային հաջողվեց հակառակ կուլակության և նրա գործակալության հանդիսացող տրոցկիստների ու աջերի դիմադրությանը, գյուղի աշխատավոր մասսաներին զարգացման հին, կապիտալիստական ուղուց դարձնել դեպի զարգացման նոր, սոցիալիստական ուղի։

Գյուղում կատարված ռևոլյուցիոն հեղաշրջման հիման վրա առաջացած նոր, կոլեկտիվիստական հարաբերություններն այն գլխավոր շարժիչ ուժը հանդիսացան, որոնք յոթ մղոնանոց քայլերով առաջ մղեցին գյուղատնտեսության զարգացումը։

ՍՍՌՄ-ում կոլտնտեսային կարգի հաղթանակը Լենինի կոոպերատիվ պլանի փայլուն հաղթանակն էր, լենինյան նախագըծումների իրագործման տրիումֆը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանա

կից անցած քառասուն տարվա ընթացքում մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը սովետական իշխանության ամենօրյա օգնության շնորհիվ դարձավ ամենախոշոր և ամենամեքենայացված գյուղատնտեսությունը աշխարհում։ Միայն վերջին երեք տարում սոցիալիստական ինդուստրիան գյուղատնտեսությանը տվել է ավելի քան 650 հազար տրակտոր, 142 հազար հացահատիկային կոմբայն, 345 հազար բեռնատար ավտոմեքենա և բազմաթիվ այլ մեքենաներ ու գործիքներ։ Կոլտնտեսային կարգը հիմնովին վերափոխեց միլիոնավոր գյուղացիների արտադրության ու կենցաղի հիմքերը նոր, սոցիալիստական հիմունքներով։ Նա բարեկեցիկ և կուլտուրական կյանքի լայն ճանապարհ է բացել սովետական գյուղի բոլոր աշխատավորների համար։ Տարեցտարի աճում և ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային սեփականությունը, աճում է նրանց դրամական ու կոլտնտեսականների ռեալ եկամուտները։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ղեկավարվելով մեծ Լենինի ցուցումներով, կարևորագույն միջոցառումներ են իրագործում գյուղատնտեսությունը գործիմաց կադրերով ապահովե-



լու, գյուղատնտեսական արտադրությունը լայն չափով մեքենայացնելու, կոլտնտեսականների և կոլտնտեսությունների նյութական շահագրգռվածությունը մսի, կաթի, հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության, ինչպես նաև գյուղատնտեսության մյուս ճյուղերի զարգացման գործում բարձրացնելու ուղղությամբ։

Մարզերի ու երկրամասերի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունները ցույց տվեցին, որ կոլտնտեսային աշխատավորությունը հաջողությամբ է կատարում գյուղատնտեսության շեշտակի վերելքի խնդիրները։ Դեռ երբեք մեր երկիրը այնքան հացահատիկ չէր հավաքել, որքան հավաքեց անցյալ տարի։ Համեմատած 1955 թվականի հետ, անցյալ տարի մթերվեց ավելի քան մեկ միլիարդ փութ շատ հացահատիկ։ Զգալի չափով բարձրացավ նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը։ Անցյալ տարի շաքարի ճակնդեղ մթերվեց 5 միլիոն տոննայով ավելի, քան 1955 թվականին, կարտոֆիլ՝ մեկ ու կես անգամ ավելի և այլն։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել անասնաբուծության զարգացման և ա-

նասունների մթերատվության բարձրացման գործում։ Ավելացավ մսի, ձվի և առանձնապես կաթի արտադրությունը։ Անցյալ տարի մթերվեց և գնվեց 30 տոկոսով ավելի կաթ, քան 1955 թվականին։

Կոլտնտեսությունները գյուղատնտեսական մթերքների հետագա ավելացման համար անսպառ ռեզերվներ ունեն։ Խնդիրը կայանում է նրանում, որպեսզի հենվելով առաջավոր փորձի, ժամանակակից տեխնիկայի և ագրոնոմիական գիտության նորագույն հայտնագործությունների վրա, այդ ռեզերվները օգտագործել և հասնել նոր հաջողությունների։

Այժմ կոլտնտեսային գյուղում լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը՝ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 100 ցենտներ միս և 400 ցենտներ կաթ ստանալու համար, բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու համար։ Իրավամբ այս շարժումն իր նշանակությամբ հավասար է խամ ու խոպան հողերի յուրացման համար ծավալված համաժողովրդական շարժմանը։ Կասկած չկա, որ նա վճռական նշանակություն կունենա գյուղատնտեսության շեշտակի վերելքի գործում։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու վերաբերյալ ունկնդիրների հետ սիստեմատիկաբար հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ է ունենում Շամշադինի շրջանի Նորաշենի կոլտնտեսության ագիտատոր Ս. Փայտյանը։ Վերջերս նա կոլտնտեսության 2-րդ բրիգադայում զրույց անցկացրեց եգիպտացորենի մշակությունը բարելավելու մասին։

Զրույցի սկզբում նա ունկնդիրներին պարզաբանեց, թե ինչպես գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունները և նրա զարգացման հիանալի հեռանկարները սովետական ժողովրդի առջև դրել են համապետական մեծ նշանակություն ունեցող խնդիր՝ մոտակա տարիներին բնակչության մեկ շնչին հասնող մսի, կաթի, յուղի արտադրության տեսակետից

հանել ու անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Քաղաքական ու տնտեսական այս կարևոր խնդրի հաջող լուծման ամենահիմնական նախապայմաններից մեկը, բացատրում է ագիտատորը, հացահատիկային տնտեսության հետագա զարգացումն է, որովհետև դրանից է կախված գյուղատնտեսության բոլոր ճյուղերի և ամենից առաջ անասնաբուծության վերելքը։ Այդ կապակցությամբ նա մանրամասն բացատրում է եգիպտացորենի արժեքավորության մասին, որը համալրում է հացահատիկի ռեսուրսները։ Վերջին տարիների ընթացքում եգիպտացորենի մշակության բնագավառում ձեռք բերած հարուստ փորձը, ասում է ագիտատորը, համոզեց գյուղատնտեսության աշխատողներին, որ եգիպտացորենը բարձր եկամտաբեր կուլտուրա է։ Այդ է պատճառը, որ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները տարեցտարի ընդարձակում են եգիպտացորենի ցանքատարածությունները։

Այնուհետև ագիտատորը կոլտնտեսականներին պատմում է, թե ինչպիսի հաջողությունների է հասել իրենց կոլտնտեսությունը եգիպտացորենի մշակության բնագավառում։



1954 թվականին մեզ մոտ առաջին անգամ 22 հեկտար տարածության վրա ցանվեց եգիպտացորեն։ Չնայած կոլտնտեսականներից շատերը դեռևս անհրաժեշտ չափով չէին տիրապետում նրա մշակության ագրոկանոններին, որովհետև դա մեզ մոտ նոր կուլտուրա էր, բայց և այնպես հիանալի բերք աճեցրին, յուրաքանչյուր հեկտարից ստացան 48 ցենտներ հատիկ, իսկ ցողուններից պատրաստեցին 230 տոննա բարձրորակ սիլոս։

Այս հանգամանքը, նշում է ագիտատորը, ամրացրեց կոլտնտեսականների հավատը դեպի այդ արժեքավոր կուլտուրան։ Նույնիսկ նրանք, ովքեր մեկ տարի առաջ հրապարակորեն հայտարարում էին, թե «Եգիպտացորենը մեզ մոտ օգուտ չի տա» զգացին, որ իրենք սխալվեցին այդ հարցում։

Ինչպես ձեզ հայտնի է, շարունակում է ագիտատորը,— այս տարի կոլտնտեսությունը ցանել է 60 հեկտար եգիպտացորեն։ Այժմ մեր խնդիրն է անընդհատ բարելավել եգիպտացորենի ցանքերի մշակությունը և նվաճել առավել բարձր բերք։

Եգիպտացորենի մշակության բարելավման առաջավոր փորձը ունկնդիրներին պարզաբանելուց հետո ագիտատորը կոնկ-

րետ թվերով ու փաստերով ցույց տվեց, թե իրենց կոլտնտեսությունում եգիպտացորենը ինչպիսի բարերար ազդեցություն ունեցավ անասնապահության մթերատվության բարձրացման վրա։ Եթե առաջներում դժվարին պրոբլեմ էր կերի, հատկապես հյութալի կերի կուտակման հարցը, ապա այժմ այն միանգամայն հեշտ է լուծվում ի հաշիվ եգիպտացորենի։ Բավական է ասել, շարունակում է ագիտատորը, որ միայն եգիպտացորենից 1954 թվականին պատրաստվել է 230 տոննա սիլոս, 1955 թվականին 250 տոննա, իսկ 1956 թվականին 270 տոննա սիլոս։ Բոլորդ լավ եք հիշում, որ ընդամենը մի քանի տարի առաջ մեզ մոտ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը 450—500 կիլոգրամից ավելի չէր բարձրանում, իսկ երբ եգիպտացորենի միջոցով մենք բավականին սիլոս կուտակեցինք, կրկնապատկըվեց կովերի կաթնատվությունը։ Անցյալ տարի յուրաքանչյուր կովից մենք ստացանք 1084 կիլոգրամ կաթ։

Այնուհետև ագիտատորը տեղական փաստերի հիման վրա ունկնդիրներին պատմում է խոզի մսի արտադրության ավելացման գործում եգիպտացորենի շատ կարևոր դերի մասին։ Ինչպես գիտեք, տարիներ շա-



րունակ,— ասում է նա,— մեզ մոտ ետ էր մնում խոզաբուծությունը՝ անասնաբուծության այդ կարևոր ու եկամտաբեր ճյուղը, որովհետև պակասում էր կերը։ Սկսած 1955 թվականից մենք հնարավորություն ստացանք կուտակել անհրաժեշտ քանակությամբ կեր խոզերի բտման համար։ Միայն անցյալ տարի առանձնացվել է 25 տոննա եգիպտացորենի հատիկ և բտվել է ավելի քան 90 գլուխ խոզ, որի շնորհիվ անցած տնտեսական տարում խոզի միսը կազմել է ամբողջ համախառն մսի 30 տոկոսը։ Սակայն խոզաբուծության բնագավառում ձեռք բերված հաջողությունները, նշում է ագիտատորը, դեռևս չեն բավարարում մեր պահանջները։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ խոզի միսը կազմի կոլտնտեսությունում արտադրվող համախառն մսի 40—50 տոկոսը։

Հետագա զրույցի ընթացքում ագիտատորը պատմում է, թե ինչպիսի լայն հնարավորություններ կան իրենց մոտ եգիպտացորենի բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը է՛լ ավելի բարձրացնելու համար։ Բավական է նշել, որ անցյալ տարի մի շարք բրիգադներ ու օղակներ իրենց լավագույն աշխատանքի

շնորհիվ հասան եգիպտացորենի բարձր բերքատվության։ Օրինակ, անցյալ տարի 6-րդ բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացավ 46 ցենտներ, իսկ 5-րդ բրիգադան 54 ցենտներ հատիկ, պլանով նախատեսված 26 ցենտների դիմաց։ Եթե կոլտնտեսության բոլոր բրիգադները, այդ թվում և մեր բրիգադան այդպիսի հաջողությունների հասնեին, նշում է ագիտատորը, ապա 1956 թվականին եգիպտացորենի բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսությունում կկազմեր ոչ թե 32 ցենտներ, այլ ավելի բարձր։

Այս տնտեսական տարում մեծ աշխատանք է կատարվել եգիպտացորենի բերքատվությունը բարձրացնելու համար։ Աշնանը, շարունակում է ագիտատորը, 50 հեկտարի վրա կատարվել է ցրտահերկ, այն մաքրվել է խոտերից ու թփուտներից և դարձել մեքենայահարմար։ Այս գարնանը այդ տարածությունները ցանքսից առաջ պարարտացվել են տեղական ու հանքային պարարտանյութերով։

Զրույցի վերջում ագիտատոր Փայտյանը մեկնաբանում է կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու վերաբերյալ նոր միջոցառումները։

---



# ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Անցած տասներկու տարիների ընթացքում Բուլղարիան ընթանալով սոցիալիստական զարգացման ուղիով հսկայական հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում։ Այդ մասին պերճախոս կերպով վկայում են հետևյալ թվերն ու փաստերը։

★ 1957 թվականին երկրի արդյունաբերական ձեռնարկությունները կտան մոտավորապես 9,6 միլիարդ լևով (լև—բուլղարական դրամի միավոր) ավելի արտադրանք, քան 1956 թվականին։ Այն, ինչ Բուլղարիան 1939 թվականին արտադրել է 20 օրվա ընթացքում, 1957 թվականին կարտադրի 3 օրում։

★ 1957 թվականի վերջում Բուլղարիան կարտադրի ավելի քան 120 հազար տոննա սև մետաղի գլանվածք, 108 հազար տոննա գունավոր մետաղների կոնցենտրատ (պղինձ, կապար, ցինկ), մոտավորապես 108 հազար տոննա ազոտային պարարտանյութեր,

100 հազար տոննայից ավելի կալցինացված և կաուստիկ սոդա։

★ Նույն ժամանակաշրջանում երկրում կարտադրվի մոտ 148 միլիոն մետր բամբակե գործվածք, 12 միլիոն 600 հազար մետր բրդե գործվածք, 15 միլիոն զույգից ոչ պակաս կաշվե և ռետինե կոշիկներ, 200 հազար տոննայից ավելի բանջարեղենի և մրգեղենի պահածոներ, ավելի քան 104 հազար տոննա միս, բավական քանակությամբ մետաղահատ դազգահներ, գյուղատնտեսական և ուրիշ մեքենաներ՝ երկրի ներքին կարիքների և արտահանման համար։

★ Ածխի տարեկան հանույթը 1957 թվականին կհասնի 11 միլիոն տոննայի, էլեկտրաէներգիայի տարեկան արտադրանքը՝ 2 միլիարդ 700 միլիոն կիլովատ-ժամից ավելի, որը 10 անգամ ավելի է քան 1939 թվականին ստացված էլեկտրաէներգիայի քանակությունը։ Քարածխի հանույթը և էլեկտրաէներգիայի արտադրանքը արդեն բավարարում է երկրի աճած պահանջմունքները։

★ 1957 թվականին բուլղարական արդյունաբերությունը տալիս է արտադրանքի նոր կարևոր տեսակներ՝ դիզելային մոտորներ, մոտոցիկլետներ, հեծանիվներ, նոր տեսակի դազգահներ, սկրեպերներ և այլն։

★ 1957 թվականի կապիտալ ներդրումների ծավալը ժողտնտեսության մեջ կազմում է մոտավորապես 3 միլիարդ 500 միլիոն լև, ընդ որում արդյունաբե-



րության մեջ ներդրված է 2 միլիարդ 230 միլիոն լև։ Այդ միջոցների օգնությամբ շահագործման կհանձնվեն արդյունաբերական նոր խոշոր օբյեկտներ։

★ Բուլղարիայի գյուղատնտեսության մեջ բոլոր ցանովի տարածությունների մոտավորապես երեք քառորդը կազմում են հացահատիկային կուլտուրաները։ Երկրում նշանակալից դեր են խաղում նաև բրնձի, գարու, վարսակի և կորեկի ցանքերը։ Զարգացած է տեխնիկական կուլտուրաների՝ ծխախոտի (80—90 տոկոսն արտահանում է), շաքարի ճակնդեղի, բամբակի մշակությունը։ Աչքի ընկնող տեղ են գրավում այգեգործությունը, բանջարաբուծությունը (տոմատ, խաղող, սալոր, պղպեղ) և վարդի մշակությունը, որոնք կարևոր տեղ ունեն արտահանության մեջ։ Ամբողջ աշխարհին հայտնի են Կազանլիկի հովտում աճեցվող վարդերը, որի յուղի արտադրությամբ և արտահանմամբ Բուլղարիան աշխարհում գրավում է առաջին տեղը։ Գյուղատնտեսության մեջ մեծ դեր է խաղում նաև անասնապահությունը։

★ 1956 թվականին երկրում հաշվվում էր 3.056 աշխատավորական կոոպերատիվ հողագործական տնտեսություններ (ԱԿՀՏ)։ 1956 թվականի հուլիսի վերջերին ԱԿՀՏ-ներում միավորված էին գյուղատնտեսական տնտեսությունների 78,29 տոկոսը, որոնք օգտա-

գործում էին մշակվող բոլոր հողատարածությունների 77,3 տոկոսը։

★ 1955 թվականին երկրում կար 184 ՄՏ կայան 18 հազար տրակտորներով (վերածված 15 ուժանոցի), մոտ 3,5 հազար կոմբայն և շատ ուրիշ գյուղատնտեսական մեքենաներ։

★ 1955 թվականին ԱԿՀՏ-ները արտադրում էին ապրանքային հացահատիկի 60 տոկոսը, բամբակի 75 տոկոսը, շաքարի ճակնդեղի 84 տոկոսը և մնացած տեխնիկական կուլտուրաների արտադրանքի մեծ մասը։

★ 1957 թվականին Բուլղարիայի գյուղատնտեսությունը ստանալու է ավելի քան 240 հազար տոննա արհեստական պարարտանյութ (դա մոտ 65 հազար տոննայով ավելի է քան 1956 թվականին)։

★ 1957 թվականին ոռոգվող հողատարածությունները կհասնեն մոտավորապես 4 միլիոն դեկարի, իսկ տրակտորային պարկը կավելանա մինչև 26 հազար տրակտորով։

★ 1955 թվականին Բուլղարիայի ազգային եկամուտը, 1939 թվականի համեմատությամբ, աճեց մոտ 2 անգամ։

★ 1952—56 թվականներին երկրում վեց անգամ անց է կացվել լայն սպառման ապրանքների գների իջեցում։ Բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, 1952 թվականի համեմատությամբ, 1955 թվականին ավելացել է 43,5 տոկոսով։



★ 1952 թվականին Բուլղարիայում անց է կացվել դրամական ռեֆորմ և վերացվել է աշխատավորների մատակարարման քարտային սիստեմը։

★ Բուլղարիայում տարեցտարի ավելանում է տրանսպորտային պարկը։ Նախատեսված է 1957 թվականին այդ պարկն ավելացնել մոտ 520 վագոնով և զգալի թվով ավտոբուսներով։ Նավատորմը ստանալու է 6.000 տոննա ջրատարողությամբ ծովային և գետային նավեր։

★ Երկրորդ հնգամյա պլանի հաջող կատարման շնորհիվ բանվորների և ծառայողների աշխատավարձը և գյուղացիների ռեալ եկամուտները 1957 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, կավելանան ավելի քան 60 տոկոսով։

★ Մեծահասակ կոոպերատորների կենսաթոշակների ավելացման համար միայն 1957 թվականին պետությունը առանձնացնում է 200—220 միլիոն լև, իսկ ընդհանրապես կոոպերատորների և մենատնտես գյուղացիների կենսաթոշակները կավելանա 400 միլիոն լևով։

★ Պետությունը լայն թափով խրագործում է նաև բնակարանային շինարարությունը։ Առաջին հնգամյակի տարիներին շահագործման է հանձնվել 3 միլիոն 400 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ 1955 թվականին աշխատավորների համար կառուցվել է 2,5 անգամ ավելի բնակարաններ, քան 1952 թվականին։

★ Աշխատավորներին ցույց է տրվում անվճար բժշկական օգնություն, ստեղծվել է հիվանդանոցների լայն ցանց։ 1956 թվականին կուրորտային բուժմամբ օգտվել են 267 հազար բանվորներ և ծառայողներ։

★ Բուլղարիայում հիմնականում վերացված է բնակչության անգրագիտությունը և մտցված է ընդհանուր պարտադիր յոթնամյա կրթությունը։ 1955 թվականին դպրոցներում սովորում էին 1 միլիոն 90 հազար մարդ։

☆ 1955 թվականին Բուլղարիայում կային 20 բուհ 31 ֆակուլտետով, որոնք ժողովրդական տնտեսության համար 150 մասնագիտությունների գծով մասնագետներ էին պատրաստում, (1939 թվականին Բուլղարիայում կար միայն 5 բուհ)։ 1955 թվականին բուհերում սովորում էին ավելի քան 37 հազար ուսանող։

★ 1957 թվականին բուհերը և թերի բարձրագույն ուսումնական հաստատությունները, տեխնիկումները և միջնակարգ հատուկ դպրոցներն ընդունվողների թիվը Բուլղարիայում կհասնի 32.100 մարդու, 1956 թվականի 21.130-ի դիմաց։

★ Սովորողների ընդհանուր թիվը երկրում 1957 թվականին կհասնի 1 միլիոն 278 հազար մարդու, կամ Բուլղարիայի յուրաքանչյուր վեցերորդ քաղաքացին կսովորի։

---



# ՎԵՐՋ ՏԱԼ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՐՑԱՎԱԶՔԻՆ, ՎԵՐԱՑՆԵԼ ԱՏՈՄԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍՊԱՌՆԱԼԻՔԸ

Լ. ԿՐԱԵՎ

Միջազգային կյանքում քիչ չեն այն պրոբլեմները, որոնց լուծման մեջ շահագրգռված է ամբողջ մարդկությունը։ Այդ պրոբլեմներից ամենագլխավորը, անկասկած, զինաթափման պրոբլեմն է։

Դեռ ժողովուրդների հիշողությունից չեն ջնջվել երկրորդ համաշխարհային պատերազմի ծանր փորձությունները, իսկ արևմըտյան տերությունների իմպերիալիստական շրջանները ագրեսիայի և սպառազինությունների իրենց քաղաքականությամբ մարդկությանը կանգնեցնում են մի նոր, ամայացուցիչ պատերազմի վտանգի առաջ։ Ատոմային և ջրածնային զենքի ստեղծումը, որն իր կործանարար ուժով շատ ու շատ գերազանցում է սովորական սպառազինությունների բոլոր տեսակները, նոր

պատերազմում գործադրվելու դեպքում անհամար աղետներ կբերի ողջ մարդկությանը։ Դրան պետք է ավելացնել և այն, որ սպառազինությունների մրցավազքը, որը անհաշիվ շահույթներ է բերում մոնոպոլիստներին, ծանր բեռ է հանդիսանում աշխատավորների համար, բարձրացնելով նրանց վրա դրվող հարկերը, իջեցնելով նրանց կենսամակարդակը։

Ահա թե ինչու հարյուր միլիոնավոր մարդիկ Եվրոպայում և Ասիայում, Աֆրիկայում և Ամերիկայում, երկրագնդի բոլոր մասերում իրենց բողոքի հզոր ձայնն են բարձրացնում սպառազինությունների մրցավազքի դեմ, պահանջում մեծ տերություններից՝ լուծել, վերջ ի վերջո զինաթափման պրոբլեմը։

Միջազգային հարաբերությունների պատմության մեջ դժվար թե գտնվի մի հարց, որի քննարկման վրա այնքան շատ ժամանակ կորցրած լինեին, ինչպես զինաթափման հարցը։ Ավելի քան տասը տարի զինաթափման հարցերի վերաբերյալ շարունակ նիստեր են գումարում Միավորված Ազգերի Կազմակերպության ամեն տեսակի հանձնաժողովներն ու ենթահանձնաժողովները, կոմիտեներն ու ենթակոմիտեները.



տարի չի լինում, որ այդ պրոբլեմը դրված չլինի ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեի սեսիաների օրակարգում։ Դա բացատրվում է զինաթափման հարցում արևմտյան տերությունների կառավարությունների բռնած դիրքով։ Խոսքով հանդես գալով ժողովուրդների համար կենսականորեն կարևոր պրոբլեմի լուծման օգտին, նրանք փաստորեն անում են ամեն ինչ, որպեսզի խանգարեն միջազգային համաձայնեցված որոշումների ընդունմանը։ Արևմտյան տերությունները սիստեմատիկ կերպով մերժել են այն բոլոր առաջարկները, որ արել է Սովետական Միությունը զինաթափման և ատոմային ու ջրածնային զենքի արգելման վերաբերյալ։ Այն տպավորությունն է ստացվում, որ նրանք զինաթափման պրոբլեմի վերաբերյալ բանակցություններն օգտագործում են Արևմուտքում շարունակ ուժեղացող սպառազինությունների մրցավազքից համաշխարհային հասարակայնության ուշադրությունը շեղելու համար։

Հակառակ ժողովուրդների սպասումների, ՄԱԿ-ի Զինաթափման հանձնաժողովի ենթակոմիտեի աշխատանքը, որը ներկայումս տեղի է ունենում Լոնդոնում, մինչև այժմ չպսակվեց հաջողությամբ։ ՍՍՌՄ պատվի-

բանակությունը ամենայն հաստատակամությամբ պաշտպանում է այն հստակ ու պարզ դիրքը, որը նախատեսում է արմատապես ու բազմակողմանիորեն լուծել զինաթափման պրոբլեմը, ներառյալ՝ միջուկային զենքի արգելումը: Սակայն արևմտյան տերությունները ոչ մի, շատ թե քիչ էական, քայլ չարեցին տեսակետները մոտեցնելու և համաձայնության հասնելու համար: Այդ պայմաններում ենթակոմիտեի աշխատանքը սպառնում է կրկին վերածվելու, ինչպես ժողովուրդն է ասում, «խոսարանի»:

Այս անգամ ևս Սովետական Միությունը, ելնելով բոլոր խաղաղասեր ժողովուրդների շահերից, կրկին ցուցաբերեց իր վճռականությունը՝ հասնելու զինաթափման պրոբլեմի գործնական լուծման: Ապրիլի 30-ին ՍՍՌՄ ներկայացուցիչը ՄԱԿ-ի Զինաթափման ենթակոմիտեի քննարկմանը մտցրեց զինաթափման բնագավառում մասնակի միջոցառումներ անցկացնելու վերաբերյալ Սովետական կառավարության նոր առաջարկները: Ինչպես հայտնի է, արևմտյան տերությունները բազմիցս վկայակոչելով զինաթափման ամբողջ պրոբլեմի լուծման բարդությունն ու դժվարությունները, փոր-



ձում էին դրանով արդարացնել բանակցությունների ձգձգումը: ՍՍՌՄ-ը հաշվի առավ բանակցությունների մեջ իր արևմտյան պարտնյորների այդ դիրքը և համաձայնեց դիմելու զինաթափման միջոցառումների շրջանակի սահմանափակման, առաջարկվող մասնակի միջոցառումները դիտելով որպես մինիմում, որպես առաջին քայլ՝ այդ պրոբլեմի հետ կապված բոլոր հարցերի հետագա լուծման գործում:

Իսկ ո՞րն է Սովետական կառավարության նոր առաջարկների բովանդակությունը և դրանք ինչո՞վ են տարբերվում զինաթափման վերաբերյալ արևմտյան տերությունների առաջարկներից: Հիշեցնենք, որ իր ժամանակին արևմտյան տերություններն իրենք էին պնդում, որ ԱՄՆ-ի ՍՍՌՄ-ի և Չինաստանի զինված ուժերը կրճատվեն, թողնելով 1—1,5 միլիոն մարդ, իսկ Անգլիայինը և Ֆրանսիայինը՝ 650 հազար մարդ: Սակայն երբ Սովետական Միությունը ընդունեց այդ առաջարկը, արևմտյան տերությունները շտապ հրաժարվեցին դրանից: Այժմ Միացյալ Նահանգներն առաջարկում են զինված ուժերի մակարդակը ԱՄՆ-ի, ՍՍՌՄ-ի և Չինաստանի համար սահմանափակել 2,5 միլիոն և Անգլիայի ու

Ֆրանսիայի համար 750 հազար մարդով, նախապես հրաժարվելով այդ մակարդակների հետագա իջեցումից: Ինչ վերաբերում է սպառազինությունների և ռազմական բյուջեների կրճատմանը, ապա ամերիկյան առաջարկներում այն նախատեսված է 10 տոկոսի չափով: Ընդ որում պետք է նշել, որ ԱՄՆ-ը հրաժարվում է ատոմային և ջրածնային զենքի արգելման միջոցառումներից:

Բավական է խորանալ ամերիկյան այդ առաջարկների մեջ, և պարզ կդառնա, մեղմ ասած, թե որքան ոչ ռեալիստական է Միացյալ Նահանգների մոտեցումը զինաթափման պրոբլեմին: Բանն այն է, որ ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի դրությունը միանման չէ: Սովետական Միության տերիտորիան և նրա սահմանների երկարությունը շատ ավելի մեծ է, քան ԱՄՆ-ինը, ուստի իր անվտանգությունն ապահովելու համար, Սովետական Միությունը, բնականաբար, պետք է ունենա համապատասխան քանակությամբ զինված ուժեր: Չպետք է մոռանալ և այն, որ Միացյալ Նահանգներին ոչ մի բան չի սպառնում, քանի որ նրանք արևմուտքում և արևելքում բաժանված են մյուս պետություններից օվկիանոսային ընդարձակ տա-



րածություններով, իսկ հյուսիսում և հարավում նրանք սահմանակից են այնպիսի պետությունների, որոնցից ԱՄՆ-ը, իր սեփական խոստովանությամբ, ոչ մի վտանգ չի սպասում: Այլ է Սովետական Միության դրությունը, որի սահմաններին մոտիկ իրենց բազմաթիվ ռազմական բազաներն են ստեղծել այնպիսի ագրեսիվ խմբավորումներ, ինչպիսիք են ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն և Բաղդադի պակտը: Այն պայմաններում, երբ զինաթափման լայն ծրագրի շուրջը համաձայնություն ձեռք չի բերվել, ամերիկյան առաջարկների ընդունումը Սովետական Միությանը կդներ Միացյալ Նահանգների համեմատությամբ ոչ շահավետ դրության մեջ:

Արդարև, իր զինված ուժերը կրճատելով ու հասցնելով 2,5 միլիոն մարդու, ԱՄՆ-ը հնարավորություն կունենար ոչ միայն ապահովել իր անվտանգությունը, այլև խոշոր զինված ուժեր պահել իր սահմաններից դուրս, ուրիշի տերիտորիաներում: Մինչդեռ Սովետական Միության կողմից իր զինված ուժերը մինչև նույն մակարդակը կրճատելը՝ վնաս կհասցներ ՍՍՌՄ-ի անվտանգությանը, որի սահմանները չունեն այնպիսի բնական պատնեշներ, ինչպես

ԱՄՆ-ը և բացի դրանից, զգալի տարածության վրա սահմանակից են ագրեսիվ ռազմական բլոկների մասնակից պետությունների սահմանների հետ։ Այլ բան է, եթե ԱՄՆ-ը, ՍՍՌՄ-ը և Չինաստանը պայմանավորվեին իրենց զինված ուժերը երկրորդ ժամանակաշրջանի ընթացքում կրճատելու մինչև 1—1,5 միլիոն մարդու, իսկ Անգլիան և Ֆրանսիան՝ 750 հազար մարդու։ Զինված ուժերի այդպիսի էական կրճատումը, ատոմային ու ջրածնային զենքի գործադրության արգելման հետ մեկտեղ՝ կնշանակեր, որ մենք գործ ունենք էֆեկտիվ զինաթափման հետ, խաղաղության ապահովման հետ։

Հենց այդ պատճառով էլ Սովետական Միությունն առաջարկում է պայմանավորվել, որ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Չինաստանի զինված ուժերը մինչև 2,5 միլիոն և Անգլիայի ու Ֆրանսիայի զինված ուժերը մինչև 750 հազար մարդու կրճատելու համաձայնագիրը միայն առաջին քայլն է, իսկ երկրորդ փուլում դրանք պետք է կրճատվեն, թողնելով համապատասխանորեն 1—1,5 միլիոն և 650 հազար մարդ։ Սովետական կառավարությունը առաջարկում է նաև՝ առաջին փուլում սովորական սպառազինությունները և ռազմական բյուջեները



կրճատել 15 տոկոսով, որը էական չափով կթեթևացներ բոլոր երկրների ժողովուրդների ուսերին ընկած ռազմական ծախսերի ծանր բեռը։

Սովետական Միության առաջարկները նախատեսում են վերահսկողության համապատասխան սիստեմ զինաթափման միջոցառումների իրականացման նկատմամբ։ Այդ նպատակով նախատեսվում է Անվտանգության խորհրդի շրջանակներում ստեղծել վերահսկողության հատուկ օրգան։ Բացի դրանից, առաջարկվում է առաջին փուլում, փոխադարձ հիմունքներով, կազմակերպել վերահսկիչ պոստեր խոշոր նավահանգիստներում, երկաթուղային հանգույցներում և ավտոմոբիլային մայրուղիներում, որոնք կհետևեն, որպեսզի տեղի չունենա զինված ուժերի և սպառազինության վտանգավոր համակենտրոնացում։ Նկատի է առնվում, որ առաջին պահին այդպիսի պոստեր պետք է ստեղծվեն միայն Սովետական Միության արևմտյան սահմանամերձ շրջաններում, Ֆրանսիայի և Անգլիայի տերիտորիայում, Հյուսիսատլանտյան դաշինքի և Վարշավայի պայմանագրի մասնակից մյուս պետությունների տերիտորիայում, ինչպես նաև ԱՄՆ-ի արև-

վելյան մասում։ Զինաթափման միջոցառումների իրականացման երկրորդ էտապում վերահսկիչ պոստեր կարող են ստեղծվել օդանավակայաններում, ընդ որում այդ հարցը պետք է համաձայնեցվի միջուկային զենքի վերջնական արգելման և այն պետությունների սպառազինությունից հանելու համապատասխան միջոցառումների հետ։

Զինաթափման բանակցությունների ընթացքում Միացյալ Նահանգների կողմից առաջադրվող պայմաններից մեկը, ինչպես հայտնի է, օդային նկարահանումների հարցն էր։ Այդ հարցում ևս Սովետական Միությունը մտցրեց համապատասխան կոնկրետ առաջարկներ, որոնք ընդառաջում են ամերիկյան պատվիրակության դիրքին։ ՍՍՌՄ-ը համաձայնեց օդային նկարահանումներ անցկացնելու Եվրոպայի մի ընդարձակ գոտում, ինչպես ՆԱՏՕ-ի մեջ, այնպես էլ Վարշավայի պայմանագիրն ստորագրած երկրների տերիտորիայում։

Առանձնակարգ կարևորություն ունի սովետական առաջարկը ատոմային ու ջրածնային զենքի հարցի վերաբերյալ, մի զենք, որը առանձնահատուկ վտանգ է ներկայացնում ժողովուրդների համար, նկատի ունենալով նրա կործանարար մեծ ուժը։ Որպես



այդ զենքի լիակատար ու անվերապահ արգելման առաջին քայլ՝ Սովետական կառավարությունը արևմտյան տերությունների կառավարություններին առաջարկում է ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները դադարեցնելու հարցը առանձնացնել ընդհանուր պրոբլեմից և լուծել անհապաղ։ Բացի դրանից, ՍՍՌՄ-ը միջուկային զենք ունեցող տերություններին առաջարկում է հանդիսավոր պարտավորություն ստանձնել, որ իրենք հրաժարվում են պատերազմական նպատակով որևէ տեսակի ատոմային ու ջրածնային զենք, այդ թվում՝ ատոմային ու ջրածնային լիցք ունեցող ավիացիոն ռումբեր, գործողության որևէ շառավիղի ռակետներ, ատոմային հրետանի և այլն գործադրելուց։ Նախատեսվում է, որ այդպիսի պարտավորությունը ուժի մեջ պետք է մտնի զինված ուժերի և սովորական տիպի սպառազինությունների կրճատման միջոցառումների իրականացման արդեն իսկ առաջին էտապի սկզբին։ Այդպիսի առաջարկի ընդունումը լրջորեն կնպաստեր միջազգային լարվածության թուլացմանը, մարդկությանը կազատեր ատոմային պատերազմի սարսափից։

Այժմ երկրագնդում, թերևս չգտնվի մի

երկիր, որտեղ միջուկային զենքն արգելելու և նրա փորձարկումները դադարեցնելու պահանջ չառաջադրվի։ Ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները դադարեցնելու համար անհապաղ համաձայնագիր կնքելու պահանջով հանդես եկավ Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը։ Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեն և մյուս երկրների խաղաղության կողմնակիցների ազգային կոմիտեները հանդես եկան՝ պաշտպանելով այդ պահանջը։

Սպառազինությունների մասնակի կրճատման վերոհիշյալ միջոցառումների հետ միասին՝ սովետական առաջարկներում կարևոր տեղ են գրավում ուրիշի տերիտորիաներում եղած օտարերկրյա ռազմական բազաները և այդ բազաների ատոմային միավորումները վերացնելու, Գերմանիայի տերիտորիայում գտնվող օտարերկրյա զինված ուժերը, ինչպես նաև Հյուսիսատլանտյան բլոկի մասնակից երկրներում ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի զինված ուժերը և Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների տերիտորիաներում Սովետական Միության Զինված Ուժերը կրճատելու հարցերը։ Բացի դրանից, Սովետական



Միությունը առաջարկեց միջոցներ ձեռք առնել պատերազմի պրոպագանդային վերջ տալու համար, որը մղվում է որոշ պետություններում։

Զինաթափման սովետական առաջարկները լայն պաշտպանություն գտան միջազգային հասարակայնության, միլիոնավոր մարդկանց կողմից։ Խորին գոհունակությամբ ընդունվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի խաղաղության նաև նոր նախաձեռնությունը, որը իր յոթերորդ սեսիայում դիմում ընդունեց ուղղված ԱՄՆ-ի կոնգրեսին և Անգլիայի պառլամենտին, կոչ անելով նրանց՝ աջակցել միջուկային զենքի փորձարկումների անհապաղ դադարեցնելու վերաբերյալ համաձայնության ձեռք բերմանը ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Անգլիայի միջև։

Սովետական Միության կառավարությունը իր նոր ավանդը մուծեց ատոմային պատերազմի վտանգը կանխելու համար մղվող պայքարում, և սովետական պառլամենտը, ՍՍՌՄ Գերագույն Սովետը, միահամուռ կերպով հավանություն տվեց այդ ավանդին։ Այժմ մնում է, որ գործի անցնեն արևմտյան տերությունների կառավարությունները ու պառլամենտները։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈՒԼԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ։*

### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 8-ի համարում։*

ՕՐԵՆՔ՝ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 11-ի համարում։*

ՕՐԵՆՔ՝ Հայկական ՍՍՌ-ում արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 11-ի համարում։*



## *2. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ*

### Գրականություն

ՕՐԵՆՔ՝ Հայկական ՍՍՌ-ում արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 11-ի համարում։*

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ— Հայկական ՍՍՌ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 7-ի համարում։*

Ա. Ի. ԽՐԻՄԼՅԱՆ— Ռեսպուբլիկայում առողջապահության վիճակի և բնակչության բժշկական սպասարկման հետագա բարելավման միջոցառումների մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 9-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 6-ի առաջնորդողը։*

## 3. ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԳՈՐԾԵՐՈՎ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

Գրականություն

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նամակը *Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի, մարզերի ու շրջանների պարտիական, սովետական, գյուղատնտեսական ու կոմերիտական օրգաններին, ՄՏԿ-ների, սովխոզների դիրեկտորներին, կոլտնտեսությունների նախագահներին, բոլոր կոլտնտեսականներին ու կոլտնտեսությունների, սովխոզների աշխատողներին և գյուղատնտեսության մասնագետներին* ոչխարաբուծությունն է՛լ ավելի զարգացնելու և բրդի արտադրությունն ավելացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 26-ի համարում։*

Երկրին տանք ավելի շատ միս ու կաթ, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի մայիս ամսվա համարի առաջնորդողը։*



## 4. ԱՄԵՆ ԿԵՐՊ ԻՋԵՑՆԵՆՔ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԸ

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի 20-րդ համագումարին, *էջ էջ 65—69, 76—78, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Համամիութենական գյուղատնտեսական և համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսների բացման կապակցությամբ *1957 թվականի հունիսի 2-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 4-ի համարում։*

## 5. ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ ԵՎ ԿԵՐԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Ճառ ՌՍՖՍՌ Հյուսիս-Արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատողների՝ Լենինգրադ քաղաքում կայացած խորհրդակցությունում *1957 թվականի մայիսի 22-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 25-ի համարում։*

Երկրին տանք ավելի շատ միս ու կաթ, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի հինգերորդ համարի առաջնորդողը։*

*6. ՑԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ*

*7. ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ*

*8. ՍՍՌՄ-Ը ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ՊԱՏՎԱՐՆ Է*

Գրականություն

Ն. Ս. Խրուշչովի զրույցը ամերիկյան «Նյու-Յորք թայմս» թերթի գլխավոր խմբագիր Տերներ Քեթլեջի հետ *1957 թվականի մայիսի 10-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 14-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը ֆրանսիական ռեսպուբլիկայի մինիստրների խորհրդի նախագահ Գի Մոլլեին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 22-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչովի զրույցը ամերիկյան «Կոլամբիա Բրոդքաստինգ սիստեմ» ռադիոհեռուստատեսային ընկերության թղթակիցների հետ, 1957 թվականի մայիսի 28-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիսի 5-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---


Ի՛ո խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

